ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# Ագիտատորի բլոկնոտ

## № 11-12 (31)


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 11-12 (31)



«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

# ԸՆԴՈՒՆԵԼՈՒԹՅՈՒՆ ԿՐԵՄԼՈՒՄ Ի ՊԱՏԻՎ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԶՈՐՔԵՐԻ ՀՐԱՄԱՆԱՏԱՐՆԵՐԻ

*Մայիսի 24-ին ՍՍՌ Միության Կառավարությունը Կրեմլում ընդունելություն կազմակերպեց ի պատիվ Կարմիր Բանակի զորքերի հրամանատարների։ Ընդունելությանը ներկա էին ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության անդամները, Ժողովրդական Կոմիսարները, Համ. Կ(բ)Պ Կենտկոմի անդամները, Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի ներկայացուցիչները, սովետական արդյունաբերության, գիտության, արվեստի, գրականության ականավոր գործիչները։*

*Ժամը մոտ 20-ին հյուրերը հավաքվում են Կրեմլի Մեծ Պալատի Գեորգիևյան դահլիճը։ Այստեղ ներկայացված է մեր փառապանծ բանակի ծաղիկը, մեր հերոսական ժողովրդի ծաղիկը։ Սովետական Միության փառաբանված Մարշալների, ռազմածա-*

կաների հրամանատարների կողքին, որոնք իրականացնում էին թշնամուն ջախջախելու ստալինյան հանճարեղ պլանը, կարելի է տեսնել Սոցիալիստական Աշխատանքի հերոսներին, սովետական զենքի ականավոր կոնստրուկտորներին, որոնց ստեղծագործական ջանքերը ապահովեցին Կարմիր Բանակը մարտական առաջնակարգ տեխնիկայով:

Ընդամենը երկու շաբաթ է անցել հիշատակելի այն օրից, երբ ամբողջ աշխարհով մեկ տարածվեց հաղթանակի բերկրալից և հուզիչ լուրը: Մայիսի 9-ին հնչեցին ընկեր Ստալինի պատմական խոսքերը, որը սովետական ժողովրդին շնորհավորեց Հայրենական Մեծ պատերազմի հաղթական ավարտման առթիվ՝ «Մեր Հայրենիքի ազատության և անկախության համար մեր մեծ զոհաբերությունները, պատերազմի ընթացքում մեր ժողովրդի կրած անթիվ-անհամար զրկանքներն ու տառապանքները, Հայրենիքի զոհասեղանին նվիրված լարված աշխատանքը թիկունքում և ռազմաճակատում՝ ապարդյուն չանցան և պսակվեցին լիակատար հաղթանակով ընդդեմ թշնամու»:

Կարմիր Բանակի և դաշնակիցների



զորքերի հարվածների տակ փուլ եկավ հիտլերյան ավազակային Գերմանիան: Մեր հաղթանակի դրոշը ծածանվեց տապալված Բեռլինի վրա: Լռեցին հրանոթները, դադարեցին արյունահեղ մարտերը: Սովետական հաղթող մեծ ժողովուրդը հպարտությամբ նշեց Հաղթանակի Տոնը, մեր արդար գործի հաղթության օրը, հանուն որի պայքարում և աշխատում էին նրա հավատարիմ զավակները:

Այսօր հինավուրց Կրեմլը դիմավորում է հաղթողներին: Նրանք բոլորն էլ՝ շարքային մարտիկից մինչև Մարշալը՝ մեծ Ստալինի պանծալի սաներն են: Ստալինը նրանց տարավ պատերազմի բոլոր դժվարությունների ու փորձությունների միջով, կոփեց նրանց կամքը, նրանց սովորեցրեց հաղթելու մեծ արվեստը: Ներկա պատերազմի մեծ ճակատամարտերում մեր ռազմիկները ամբողջ աշխարհին ցույց տվեցին մեծ արիության, անվեհերության ու հերոսության օրինակներ: Գերմանա-ֆաշիստական զավթիչների դեմ մղված դաժան ճակատամարտերում նրանց ոգեշնչում էին մեր մեծ նախահայրերի՝ Ալեքսանդր Նևսկու, Դիմիտրի Դոնսկոյի, Կուզմա Մինինի, Դիմիտրի Պո-

ժարսկու, Ալեքսանդր Սուվորովի, Միխայիլ Կուտուզովի կերպարները, մեր դյուցազուն ռազմիկներին հովանի էր մեծ Լենինի հաղթական դրոշը։

Ամբողջ երկիրը, ամբողջ սովետական ժողովուրդը իրավամբ հպարտանում են իրենց զորավարներով և զինվորներով. պատերազմում նրանք տարան այնպիսի հաղթանակ, ինչպիսին դեռևս չգիտե պատմությունը։ Նրանք հողմացրիվ արին ամենաուժեղն ու նենգը այն բոլոր թշնամիներից, որոնք երբևիցե արշավանքի են դուրս եկել դեպի մեր հարազատ հողը։ Հայրենիքը նշեց իր հավատարիմ զավակների մարտական սխրագործությունները, ռազմական խիզախությունը՝ նրանցից շատերի կրծքին փայլում են շքանշաններ, որոնք հիշեցնում են Մոսկվայի մոտ, Ստալինգրադի մոտ, Ուկրաինայի և Բելոռուսիայի դաշտերում տեղի ունեցած մեծ ճակատամարտերը, թշնամու հողում կատարված հաղթական արշավները։ Փա՜ռք նրանց՝ ազատագրական պատերազմի հերոսներին, որոնք բոլոր փորձությունների միջով պատվով անցկացրին Լենինի-Ստալինի մեծ դրոշը, որոնք բազմապատկեցին ռուսական զենքի մարտական տրա-



դիցիաները, իրենց սխրագործություններով նորանոր հերոսական էջեր գրեցին մեր հայրենիքի պատմության մեջ։

Մեր հաղթանակը ռազմաճակատի և թիկունքի միացյալ ջանքերի արդյունքն է, Ուրալի և Սիբիրի զինագործների, Բաքվի նավթագործների, Մագնիտոգորսկի մետալուրգների, Կուզբասի հանքագործների հերոսական աշխատանքի արդյունքը։ Մեր հաղթանակը սովետական մեծ երկրի բոլոր ժողովուրդների՝ Ռուսաստանի և Ուկրաինայի զավակների, Բելոռուսիայի և Ադրբեջանի աշխատավորների, Ուզբեկստանի և Վրաստանի բանվորների ու կոլխոզնիկների, Լենինի-Ստալինի մեծ և անհաղթ դրոշի տակ եղբայրական դաշինքով միավորված բոլոր ազգությունների աշխատավորության հայրենասիրական ջանքերի պտուղն է։

Ժամի 20-ն է։ Հավաքվածները հոտնկայս, բուռն և երկար չլռող ծափահարություններով, դիմավորում են ընկեր Ի. Վ. Ստալինի, ընկերներ Վ. Մ. Մոլոտովի, Կ. Ե. Վորոշիլովի, Ա. Ա. Ժդանովի, Ն. Ս. Խրուշչևի, Լ. Մ. Կագանովիչի, Ա. Ա. Անդրեևի, Ա. Ի. Միկոյանի, Ն. Մ. Շվերնիկի, Լ. Պ. Բերիայի, Գ. Մ. Մալենկովի, Ն. Ա. Բուլգա-

նինի, Ն. Ա. Վոզնեսենսկու երևալը դահլիճում։ Մի քանի րոպե շարունակ տևում է ջերմ օվացիան ի պատիվ Հաղթանակի մեծ ոգեշնչող ու կազմակերպիչ ընկեր Ստալինի, ի պատիվ նրա զինակիցների։

Դահլիճում լռություն է հաստատվում։ Ընկեր Մոլոտովը հրավիրում է Սովետական Միության Մարշալներին տեղեր գրավել նախագահության մեջ։ Դահլիճը ջերմագին ողջունում է փառապանծ զորավարներին, որոնք ղեկավարում էին ռազմական մեծ արշավանքները Վոլգայից մինչև Շպրեե, Մերձմոսկովյան դաշտերից մինչև Բեռլին, ուկրաինական տափաստաններից մինչև Բրանդենբուրգ։

Ընկ. Վ. Մ. Մոլոտովը դիմում է հավաքվածներին հակիրճ ճառով.

— Ընկերնե՛ր, Կառավարությունը ներկա ընդունելությունը կազմակերպել է սոցիալիստական շինարարության, գիտության և արվեստի ականավոր գործիչների մասնակցությամբ՝ ի պատիվ Կարմիր Բանակի զորքերի հրամանատարների։ Այսօրվա կառավարական ընդունելությունը տեղի է ունենում ի պատիվ սովետական զորավարների, որոնք մեր բանակները մարտի էին



տանում գերմանական ֆաշիզմի դեմ մղվող Հայրենական Մեծ պատերազմի բազմաթիվ ճակատներում, մաքրեցին մեր երկիրը ատելի զավթիչներից և մեզ հաղթանակ բերեցին ընդդեմ հիտլերյան Գերմանիայի (բուռն ծափահարություններ)։ Այս օրերին ամբողջ սովետական ժողովրդի հայացքը ուղղված է դեպի մեր մարտիկներն ու հրամանատարները, նրանց, ովքեր պատերազմի այս ծանր տարիների ընթացքում պայքար էին մղում մեր ժողովրդի անկախության, ազատության և երջանկության համար։ Այս օրերին սովետական ամբողջ ժողովուրդը իր հայացքն ուղղում է դեպի իր հաղթական բանակը և նրա ղեկավարները օրինական հպարտության զգացմունքով նրանց մատուցած մարտական ծառայությունների համար և անսահման սիրով դեպի իր անձնուրաց մարտիկներն ու հրամանատարները։ Այսօր մենք պետք է կենաց բաժակը բարձրացնենք ի պատիվ մեր կարմիր բանակայինների և ռազմական ծովայինների, ի պատիվ մեր սպաների, գեներալների, ադմիրալների և պանծալի մարշալների ու նախ և առաջ ի պատիվ նրա, ով ղեկավարել և ղեկավարում է մեր պայքարը և մեր ժողովրդին

հայցրեց պատմության մեջ դեռ չտեսնված մեծ հաղթանակի, ի պատիվ մեծ մարդու և սիրելի առաջնորդի, ի պատիվ ընկեր Ստալինի։

Ներկա գտնվողները միահամուռ մղումով ոտքի են կանգնում և ջերմ օվացիա սարքում ի պատիվ մեծ առաջնորդի, ուսուցչի և զորավարի։

— Ընկերնե՛ր, մեր բանակը,— շարունակում է ընկ. Մոլոտովը,— արժանի գտնվեց մեր սոցիալիստական պետությանը, արժանի գտնվեց Եվրոպան գերմանական ֆաշիզմից ազատագրելու իր մեծ միսիային։

Մեր բանակին, ինչպես և մեր ամբողջ սովետական ժողովրդին, դաստիարակել է բոլշևիկյան պանծալի պարտիան, Լենինի-Ստալինի պարտիան։ Մեր պարտիան ստեղծել է մեծ մտքի և գործի մարդը՝ մեծ Լենինը։ Մեր պարտիան այժմ հաղթանակից հաղթանակ է տանում մեծ Ստալինը։ Ես բարձրացնում եմ բաժակս Լենինի-Ստալինի պարտիայի կենացը, մեր բոլշևիկյան պարտիայի Կենտրոնական Կոմիտեի կենացը, մեր հարազատ մեծ Ստալինի կենացը։

Ընկ. Մոլոտովի եզրափակիչ խոսքերը դահլիճը դիմավորում է ջերմագին ծափա-



հարություններով, ողջույնի բացականչություններով ի պատիվ մեծ Ստալինի, ի պատիվ հաղթող քաջարի Կարմիր Բանակի։

Ընկ. Վ. Մ. Մոլոտովը, դիմելով հյուրերին, ասում է.

—Ընկերնե՛ր, այստեղ ներկա է լեհ հանքագործների դելեգացիան, որը Մոսկվային նվեր է բերել ածխով բեռնված մի գնացք։ Ես առաջարկում եմ Սովետական Միության բարեկամ դեմոկրատական Լեհաստանի կենացը, սովետա-լեհական բարեկամության կենացը, բարեկամություն, որը պետք է լինի սլավոնական ժողովուրդների անխորտակելի բարեկամության օրինակը։

Լեհ հանքագործների դելեգացիան, որին ջերմորեն ողջունում են ներկա գտնվողները, ուղղվում է դեպի նախագահությունը։ Ողջույնի բացականչություններ են հնչում ի պատիվ ընկեր Ստալինի, ի պատիվ սովետա-լեհական բարեկամության։ Լեհական դելեգացիան մայրենի լեզվով ժողովրդական կենացի երգ է երգում ի պատիվ ընկեր Ստալինի։

Ընկ. Մոլոտովը բաժակ է բարձրացնում «մեզ բոլորիս սիրելի, ռուս ժողովրդի ականավոր ներկայացուցիչ, բոլշևիկյան

Կենտրոնական Կոմիտեի ավագագույն անդամ, Սովետական պետության ղեկավար Միխայիլ Իվանովիչ Կալինինի կենացը»:

Ներկա գտնվողները ընկ. Մոլոտովի խոսքերը դիմավորում են ջերմ ծափահարություններով:

Ընկեր Ի. Վ. Ստալինը, դիմելով հյուրերին, ասում է.

— Ես առաջարկում եմ մեր արտաքին քաղաքականության ղեկավար Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովի կենացը: Մի մոռանաք, որ լավ արտաքին քաղաքականությունը երբեմն ավելի մեծ կշիռ ունի, քան երկու-երեք բանակ ռազմաճակատում: Մեր Վյաչեսլավի կենացը:

Դահլիճը ջերմ օվացիա է սարքում ի պատիվ ընկեր Մոլոտովի:

Ընկ. Մոլոտովը դիմում է ներկա գտնըվողներին, առաջարկելով բաժակ բարձրացնել Կարմիր Բանակի զորքերի հրամանատարների կենացը:

— Ես նախ և առաջ պետք է հիշատակեմ ընկեր Ժուկովի անունը,— ասում է ընկ. Մոլոտովը:— Ընկեր Ժուկովի անվան հետ կապված են Մոսկվայի հերոսական պաշտպանությունը, Լենինգրադի պաշտպա-



նությունը, բարեկամ Լեհաստանի մայրաքաղաք Վարշավայի ազատագրումը: Մեր զորքերը, Մարշալ Ժուկովի հրամանատարությամբ, ներխուժեցին ֆաշիստական որջը՝ Բեռլին և նրա վրա կանգնեցրին Հաղթանակի դրոշը: Մարշալ Ժուկովի կենա՛ցը:

Դահլիճում նորից թնդում է ծափահարությունների որոտը ի պատիվ քաջարի Կարմիր Բանակի և նրա զորավարների:

Ընկ. Մոլոտովը առաջարկում է Ուկրաինայում մղված մարտերի հերոս, Պրագայի ազատարար Մարշալ Կոնևի կենացը, մի զորավարի, որի զորքերը Մարշալ Ժուկովի զորքերի հետ միասին ներխուժեցին Բեռլին. Ստալինգրադի ճակատամարտի հերոս Մարշալ Ռոկոսսովսկու կենացը, ճակատամարտ, որը պատմական շրջադարձ հանդիսացավ ներկա պատերազմում, մի զորավարի, որը ղեկավարում էր Բելոռուսիայում տեղի ունեցած գործողությունները, վռնդեց գերմանացիներին Դանցիգից և Շտետտինից. Մարշալ Գովորովի կենացը, որի զորքերը ջախջախեցին գերմանացիներին Լենինգրադի մոտ, ազատագրեցին Տալլինը, խորտակեցին թշնամու հզոր պաշտ-

պանությունը Կարելյան պարանոցում և ազատագրեցին Վիբորգը. Ռոստովի ազատագրման Հերոս Մարշալ Մալինովսկու կենացը, մի զորավարի, որը գերմանական և հունգարական ֆաշիստներից ազատագրեց Հունգարիայի մայրաքաղաք Բուդապեշտը. Բուլղարիայի և նրա մայրաքաղաք Սոֆիայի ազատագրման Հերոս Մարշալ Տոլբուխինի կենացը, որը գերմանական զավթիչներին վռնդեց Ավստրիայի մայրաքաղաք Վիեննայից. Արևելյան Պրուսիայում մղված մարտերի Հերոս Մարշալ Վասիլևսկու կենացը որի զորքերը գրավեցին պրուսական միլիտարիզմի միջնաբերդ Քյոնիգսբերգը. բանակի գեներալ Բաղրամյանի կենացը, որն ավարտեց Զեմլանդյան գերմանական խմբավորման ջախջախումը. Մարշալ Մերեցկովի կենացը, որը ղեկավարում էր սովետական զոքերի մարտական գործողությունները Հյուսիսում. բանակի գեներալ Երեմենկոյի կենացը, որի զորքերը հաղթականորեն ճեղքեցին-անցան Կարպատները։

Հյուրերը ոտքի են կանգնում և ջերմագին ողջունում ստալինյան պանծալի զորավարներին, որոնք փառաբանեցին սովետական զենքը, փայլուն կերպով իրագործեցին Գե-



րագույն Գլխավոր Հրամանատարի հանճարեղ նախագծումները։

Ընկ. Մոլոտովը առաջարկում է Կարմիր Բանակի ավագագույն զորավարների կենացը, նրանց, ովքեր ղեկավարել են Կարմիր Բանակը քաղաքացիական պատերազմի տարիներին, հերոսաբար պաշտպանելով թշնամիներից սովետական երիտասարդ պետությունը։ Ընկ. Մոլոտովը բաժակ է բարձրացնում Մարշալ Կ. Ե. Վորոշիլովի, Մարշալ Բուդյոննու և Մարշալ Տիմոշենկոյի կենացը, որոնք սովետական զորքերին դեպի հաղթական մարտեր էին տանում դեռ քաղաքացիական պատերազմի տարիներին և ղեկավարում էին զորքերը Հայրենական պատերազմի տարիներին։

Սովետական Միության Մարշալները, գեներալները, սոցիալիստական արդյունաբերության, գիտության, արվեստի և գրականության գործիչները ոտքի են կանգնում և ջերմագին ողջունում են Կարմիր Բանակի փառապանծ զորավարներին։

Վերջում ընկ. Մոլոտովը ողջունում է սովետական Ռազմա-Ծովային Նավատորմի ղեկավարներ՝ նավատորմի ադմիրալներ Կուզնեցովին և Իսակովին, նավատորմների

*հրամանատարներ, ադմիրալներ Տրիբուցին, Օկտյաբրսկուն, Գոլովկոյին, Յումաշևին, ինչպես նաև Կարմիր Բանակի զորքերի հատուկ տեսակների Մարշալներին, թվելով նրանց բոլորի անունները, սկսած հրետանու Գլխավոր Մարշալ Վորոնովից և Ավիացիայի Գլխավոր Մարշալներ Նովիկովից ու Գոլովանովից։*

*Այնուհետև կենացներ են առաջարկվում ի պատիվ Պաշտպանության Պետական Կոմիտեի, ի պատիվ նրա նախագահ Մարշալ Ի. Վ. Ստալինի, ի պատիվ Պաշտպանության Պետական Կոմիտեի անդամների, որոնք ապահովեցին սպառազինության բոլոր տեսակների՝ տանկերի, ինքնաթիռների, ռազմամթերքի անխափան մատակարարումը Կարմիր Բանակին, որոնք ռազմաճակատներում զորքերին ապահովեցին նյութական մյուս բոլոր մատակարարումով և պարենամթերքով՝ Լ. Պ. Բերիայի, Գ. Մ. Մալենկովի, Ա. Ի. Միկոյանի, Լ. Մ. Կագանովիչի, Ն. Ա. Բուլգանինի, Ն. Ա. Վոզնեսենսկու կենացները։ Դրանից հետո առաջարկվում է Գլխավոր Շտաբի և նրա պետ՝ բանակի գեներալ Անտոնովի կենացը։*

*Բարեկամական սրտագին մթնոլորտում*



*անցավ մեծ առաջնորդի ու զորավարի, պարտիայի և կառավարության ղեկավարների պատմական այդ հանդիպումը մեր հերոսական բանակի և հերոսական ժողովրդի ներկայացուցիչների հետ, որոնց համատեղ ջանքերը պսակվեցին փառապանծ հաղթանակով։*

## ԸՆԿԵՐ Ի. Վ. ՍՏԱԼԻՆԻ ԵԼՈՒՅԹԸ

Ընկերնե՛ր, թույլ տվեք ինձ բարձրացնել ևս մեկ, վերջին կենաց-բաժակը:

Ես կցանկանայի բաժակ բարձրացնել մեր սովետական ժողովրդի, և նախ և առաջ, ռուս ժողովրդի կենացը (ԲՈՒՌՆ, ԵՐԿԱՐԱՏԵՎ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ, «ՈՒՌԱ՛» ԲԱՑԱԿԱՆՉՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

Ես խմում եմ նախ և առաջ ռուս ժողովրդի կենացը այն պատճառով, որ նա Սովետական Միության կազմի մեջ մտնող բոլոր ազգերից առավել ականավոր ազգն է:

Ես բաժակ եմ բարձրացնում ռուս ժողովրդի կենացը այն պատճառով, որ նա այս պատերազմում արժանացավ ընդհանուր ճանաչման որպես Սովետական Միու-

թյան ղեկավար ուժ մեր երկրի բոլոր ժո-ղովուրդների մեջ:

Ես բաժակ եմ բարձրացնում ռուս ժո-ղովրդի կենացը ոչ միայն այն պատճա-ռով, որ նա ղեկավար ժողովուրդ է, այլև այն պատճառով, որ նա ունի պայծառ միտք, տոկուն բնավորություն և համբե-րություն:

Մեր կառավարությունը քիչ սխալներ չի ունեցել, մեզ մոտ եղել են հուսահա-տական դրության մոմենտներ 1941—1942 թվերին. այն ժամանակ մեր բանակը նա-հանջում էր, թողնում Ուկրաինայի, Բելո-ռուսիայի, Մոլդավիայի, Լենինգրադի մար-զի, Մերձբալթիկայի, Կարելո-Ֆիննական ռեսպուբլիկայի մեզ համար հարազատ գյուղերն ու քաղաքները, թողնում էր այն պատճառով, որ ուրիշ ելք չկար: Մի այլ ժողովուրդ կարող էր կառավարությանն ա-սել՝ դուք չարդարացրիք մեր սպասելիքնե-րը, հեռացեք, մենք կկարգենք այլ կառա-վարություն, որը հաշտություն կկնքի Գերմանիայի հետ և հանգիստ կապահովի մեզ համար: Բայց ռուս ժողովուրդը չգնաց դրան, որովհետև նա հավատում էր իր կառավարության քաղաքականության ճըշ-



տությամբ և դիմեց զոհաբերությունների, որպեսզի ապահովի Գերմանիայի ջախ-ջախումը: Եվ ռուս ժողովրդի այս վստահու-թյունը սովետական կառավարությանը հանդիսացավ այն վճռական ուժը, որն ա-պահովեց պատմական հաղթանակը մարդ-կության թշնամի ֆաշիզմի դեմ:

Շնորհակալություն նրան՝ ռուս ժողո-վրդին, այդ վստահության համար:

Ռուս ժողովրդի կենա՛ցը (ԲՈՒՌՆ, ԵՐ-ԿԱՐ ԶԼՈՐԴ ԾԱՓԱՀԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ):

***

Ընդունելության ժամանակ հյուրերի համար տրվեց մեծ համերգ, որին մաս-նակցեցին մայրաքաղաքի արտիստական լավագույն ուժերը:

(ՏԱՍՍ)

---

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԴԱՇՆԱԿԻՑ ՉՈՐՍ ՏԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆԸ ՍՏԱՆՁՆԵԼՈՒ ԴԵԿԼԱՐԱՑԻԱՅԻ ՍՏՈՐԱԳՐՈՒՄԸ

# ԴԵԿԼԱՐԱՑԻԱ

### ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՊԱՐՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ, ՄԻԱՑՅԱԼ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ՈՒ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՆԿԱՏՄԱՄԲ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԻՇԽԱՆՈՒԹՅՈՒՆ ՍՏԱՆՁՆԵԼՈՒ ՄԱՍԻՆ

*Գերմանական զինված ուժերը ցամաքում, ծովում և օդում լիակատար պարտություն կրեցին և անվերապահորեն կապիտուլյացիայի ենթարկվեցին, և Գերմանիան, որը պատասխանատու է պատերազմի համար, այլևս անընդունակ է հակառակելու հաղթող տերությունների կամքին: Դրանով իսկ Գերմանիայի անվերապահ կապիտուլյացիան իրականացած է, և Գերմանիան իրեն կախման մեջ է դրել*



*այնպիսի պահանջներից, որոնք կարող են այժմ կամ հետագայում թելադրվել նրան:*

*Գերմանիայում չկա կենտրոնական կառավարություն կամ իշխանություն, որն ընդունակ լինի ստանձնելու կարգի պահպանման, երկրի կառավարման և հաղթող տերությունների պահանջների կատարման պատասխանատվությունը:*

*Հենց այդպիսի պայմաններում անհրաժեշտ է, առանց վնաս հասցնելու հետագա որոշումներին, որոնք կարող են ընդունվել Գերմանիայի վերաբերմամբ, տնօրինել գերմանական զինված ուժերի կողմից պատերազմական հետագա գործողությունների դադարեցումը, կարգի պահպանումը Գերմանիայում և երկրի կառավարումը, ու հայտարարել այն անմիջական պահանջները, որոնք Գերմանիան պարտավոր է կատարել:*

*Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Միացյալ Թագավորության, Ամերիկայի Միացյալ Նահանգների և Ֆրանսիական Ռեսպուբլիկայի Գերագույն Հրամանատարությունների ներկայացուցիչները, որոնք հետագայում կոչվելու են «դաշնակիցների ներկայացուցիչներ», գոր-*

ծելով իրենց համապատասխան կառավարությունների լիազորությամբ և հօգուտ Միավորված Ազգերի շահերի, դրան համապատասխան հռչակում են հետևյալ դեկլարացիան.

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Միացյալ Թագավորության ու Ամերիկայի Միացյալ Նահանգների Կառավարությունները և Ֆրանսիական Ռեսպուբլիկայի ժամանակավոր Կառավարությունը սրանով ստանձնում են գերագույն իշխանությունը Գերմանիայի վրա, ներառյալ ամբողջ իշխանությունը, որ ունեն գերմանական կառավարությունը, գերագույն հրամանատարությունը և ամեն մի մարզային, մունիցիպալ, կամ տեղական կառավարություն կամ թե իշխանություն: Վերոհիշյալ նպատակների համար նման իշխանության իրավունքների ու լիազորությունների ստանձնումը չի հանդիսանում Գերմանիայի աննեկսիա:

Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Միացյալ Թագավորության ու Ամերիկայի Միացյալ Նահանգների Կառավարությունները և Ֆրանսիական Ռեսպուբլիկայի ժամանակավոր Կա-



ռավարությունը հետագայում կգծեն Գերմանիայի կամ թե նրա ամեն մի մասի սահմանները, ինչպես նաև կորոշեն Գերմանիայի կամ թե ներկայումս Գերմանիայի տերիտորիայի մասը հանդիսացող ամեն մի շրջանի ստատուսը:

Չորս կառավարությունների կողմից ստանձնված գերագույն իշխանության, իրավունքների ու լիազորությունների ուժով Դաշնակիցների ներկայացուցիչները հայտարարում են Գերմանիայի լիակատար պարտությունից և անվերապահ կապիտուլացիայից բխող հետևյալ պահանջները, որոնք Գերմանիան պարտավոր է կատարել.

## ՀՈԴՎԱԾ 1.

Գերմանիան և գերմանական բոլոր ռազմական, ռազմա-ծովային և ռազմա-օդային իշխանություններն ու գերմանական վերահսկողության տակ գտնվող բոլոր զինված ուժերը բոլոր ռազմաբեմերում՝ ցամաքում, ծովում և օդում անհապաղ դադարեցնում են պատերազմական գործողությունները Միավորված Ազգերի զինված ուժերի դեմ:

## ՀՈԴՎԱԾ 2.

ա) Գերմանիայի կամ գերմանական վերահսկողության տակ գտնվող բոլոր զինված ուժերը, որտեղ էլ որ նրանք գտնվելիս լինեն, ներառյալ ցամաքային, օդային, հակաօդային և ռազմա-ծովային ուժերը, ՍՍ, ՍԱ և գեստապոն, ինչպես նաև բոլոր մյուս ուժերը կամ օժանդակ կազմակերպությունները, որոնք զենք ունեն, պետք է ամբողջովին զինաթափվեն, իրենց սպառազինությունը և գույքը հանձնելով տեղական դաշնակից հրամանատարներին կամ թե Դաշնակիցների ներկայացուցիչների նշանակած սպաներին:

բ) Վերևում «ա» կետում հիշատակված բոլոր ուժերի միավորումների ու զորամասերի անձնակազմը, դաշնակից համապատասխան պետության զինված ուժերի Գլխավոր Հրամանատարի հայեցողությամբ, հայտարարվում է ռազմագերի մինչև հետագա որոշումների ընդունումը և ենթարկվում է այնպիսի պայմանների ու կարգադրությունների, որոնք կարող են թելադրվել դաշնակիցների համապատասխան ներկայացուցիչների կողմից:

գ) Վերևում «ա» կետում հիշատակված



բոլոր զինված ուժերը, որտեղ էլ որ նրանք գտնվելիս լինեն, մնում են իրենց տեղերում մինչև դաշնակիցների ներկայացուցիչներից կարգադրությունների ստացվելը:

դ) Վերոհիշյալ զինված ուժերի էվակուացիան այն բոլոր տերիտորիաներից, որոնք գտնվում են Գերմանիայի 1937 թվի դեկտեմբերի 31-ին գոյություն ունեցող սահմաններից դուրս, կատարվում է դաշնակիցների ներկայացուցիչների կողմից տրվելիք ցուցումների համաձայն:

ե) Քաղաքացիական ոստիկանության ջոկատները, որոնք զինվելու են միայն ձեռքի զենքով կարգ պահպանելու և պահնորդություն կատարելու համար, որոշվելու են դաշնակիցների ներկայացուցիչների կողմից:

## ՀՈԴՎԱԾ 3.

ա) Գերմանիայում կամ Գերմանիայի կողմից օկուպացված կամ թե վերահսկվող տերիտորիաներում կամ ջրերում գտնվող ամեն տեսակի ու պետական պատկանելության բոլոր ռազմական, ծովային ու քաղաքացիական ինքնաթիռները, բացառությամբ նրանց, որոնք սպասարկում են դաշնակիցներին, պետք է մնան գետնի, ջրի կամ

նավերի վրա, մինչև հետագա տնօրինություն։

բ) Գերմանիայի կողմից չօկուպացված կամ չվերահսկվող տերիտորիաներում կամ ջրերում, կամ թե նրանց վրա գտնվող բոլոր գերմանական կամ թե Գերմանիայի տնօրինության տակ գտնվող ինքնաթիռները, պետք է մեկնեն Գերմանիա կամ այնպիսի այլ տեղ կամ տեղեր, որոնք մատնացույց կարվեն դաշնակիցների ներկայացուցիչների կողմից։

## ՀՈԴՎԱԾ 4.

ա) Բոլոր գերմանական կամ Գերմանիայի կողմից վերահսկվող ռազմածովային նավերը, վերջրյա ու ստորջրյա, օժանդակ, ինչպես նաև առևտրական ու այլ նավերը, որտեղ էլ որ նրանք գտնվելիս լինեն սույն դեկլարացիայի հրապարակման պահին, և գերմանական նավահանգիստներում գտնվող բոլոր մյուս առևտրական նավերը, ինչպիսի ազգության էլ պատկանելիս լինեն, պետք է մնան տեղում կամ անհապաղ մեկնեն դաշնակիցների ներկայացուցիչների մատնացույց արած նավահանգիստները կամ



բազաները։ Այդ նավերի անձնակազմերը մնում են նավերի վրա մինչև հետագա տնօրինություն։

բ) Միավորված Ազգերի բոլոր ռազմանավերն ու նավերը, որոնք սույն դեկլարացիայի հրապարակման ժամանակ գտնվում են Գերմանիայի տնօրինության կամ վերահսկողության տակ, անկախ այն բանից, թե ծովավարային դատարանի որոշմամբ, կամ թե որևէ այլ կերպ վերահանձնված կամ թե չի վերահանձնված դրանց տիրության իրավունքը, պետք է դաշնակիցների ներկայացուցիչների մատնանշած ժամկետներում մեկնեն մատնացույց արված նավահանգիստներն ու բազաները։

## ՀՈԴՎԱԾ 5.

ա) Գերմանական զինված ուժերի տնօրինության տակ կամ գերմանական վերահսկողության կամ թե Գերմանիայի տնօրինության տակ գտնվող բոլոր կամ հետևյալ առարկաներից որևէ մեկը պետք է պահպանվի անվնաս և լավ վիճակում ու դրվի դաշնակիցների ներկայացուցիչների տնօրինության տակ, այնպիսի նպատակի համար և այնպիսի ժամկետներում ու տե-

ղերում, որ ներկայացուցիչները կարող են թելադրել.

1) Ամբողջ զենքը, ռազմամթերքը, պայթուցիկ նյութերը, ռազմական սարքավորումը, պահեստներն ու պաշարները և պատերազմի ամեն տեսակի այլ գործիքներն ու մնացած ամբողջ ռազմանյութերը.

2) Ամեն տիպի ռազմա-ծովային բոլոր նավերը, ինչպես ստորջրյա, այնպես էլ վերջրյա, օժանդակ ռազմա-ծովային նավերը և բոլոր առևտրական նավերը, որոնք գտնվում են նավարկության, նորոգման մեջ կառուցված կամ կառուցվում են.

3) Ամեն տեսակի բոլոր ինքնաթիռները, ավիացիոն և հակաօդային սարքավորում և սարքեր.

4) Կապի ու տրանսպորտի ամբողջ սարքավորումը և միջոցները ցամաքում, ջրում և օդում.

5) Բոլոր ռազմական սարքերն ու հաստատությունները, ներառյալ օդանավակայանները և հիդրո-ավիաբազաները, նավահանգիստները և ռազմա-ծովային բազաները, պահեստները, ներքին ու առափնյա մշտական և ժամանակավոր ամրությունները, բերդերը և մյուս ամրացված շրջան-



ները՝ այդպիսի բոլոր ամրությունների, սարքերի ու հաստատությունների պլաններով ու գծագրերով միասին:

6) Բոլոր ֆաբրիկաները, գործարանները, արհեստանոցները, հետազոտական ինստիտուտները, լաբորատորիաները, փորձակայանները, տեխնիկական տվյալները, պատենտները, պլանները, գծագրերը և գյուտերը, որոնք պատրաստվել են կամ նշանակված են վերևում՝ 1, 2, 3, 4 և 5-րդ կետերում հիշատակված առարկաների, նյութերի ու միջոցների արտադրության համար կամ արտադրությանը և կամ թե դրանց գործադրմանը նպաստելու համար, կամ թե այլ կերպ նշանակված են նպաստելու պատերազմը վարելուն:

բ) Դաշնակիցների ներկայացուցիչների պահանջով պետք է տրամադրվեն՝

1) «ա» կետում հիշատակված վեց կատեգորիաներից ամեն մեկի մեջ մտնող ամեն ինչի սպասարկման, պահպանման ու շահագործման համար անհրաժեշտ բանվորական ուժ, սպասարկություն և սարքավորում.

2) Ամեն տեսակ տեղեկություններ ու փաստաթղթեր, որ դաշնակիցների ներկա-

յացուցիչները այդ կապակցությամբ կարող են պահանջել.

գ) Դաշնակիցների ներկայացուցիչների պահանջով պետք է տրամադրվեն բոլոր միջոցները դաշնակից զորքերին ու օրգաններին, նրանց գույքը և մատակարարման առարկաները երկաթուղիներով, խճուղով և հաղորդակցության այլ ցամաքային ուղիներով կամ ծովով, գետերով և կամ թե օդով փոխադրելու համար։ Տրանսպորտի բոլոր միջոցները պետք է պահպանվեն կարգին ու սարքին, ինչպես նաև պետք է տրամադրվի դրա համար անհրաժեշտ բանվորական ուժ, սպառազինություն և սարքավորում։

## ՀՈԴՎԱԾ 6.

ա) Գերմանական իշխանությունները պետք է դաշնակիցների ներկայացուցիչներին հանձնեն, համապատասխան նրանց սահմանելիք կարգի, իրենց իշխանության տակ գտնվող բոլոր ռազմագերիներին, որոնք պատկանում են Միավորված Ազգերի զինված ուժերին, և ներկայացնեն այդ անձանց լիակատար ցուցակները, նշելով նրանց կալանավորման վայրերը Գերմանիա-



յում կամ Գերմանիայի կողմից օկուպացված տերիտորիայում։ Մինչև այդ ռազմագերիների ազատումը գերմանական իշխանությունները և ժողովուրդը պետք է պահպանեն նրանց կյանքն ու գույքը և նրանց ապահովեն բավականաչափ սննդով, հագուստով, ապաստանով, բուժօգնությամբ, դրամով՝ համաձայն նրանց կոչումների ու պաշտոնների։

բ) Գերմանական իշխանությունները և ժողովուրդը պետք է նման ձևով ապահովեն ու ազատեն Միավորված Ազգերի բոլոր մյուս քաղաքացիներին, որոնք կալանավորված, ներկալված են կամ ենթարկված այլ տեսակի սահմանափակումների, և բոլոր այլ անձանց, որոնք կարող են կալանավորված, ներկալված կամ այլ տեսակի սահմանափակումների ենթարկված լինել քաղաքական նկատառումներով կամ թե նացիստական որևէ այլ միջոցառումների, օրենքի կամ որոշման հետևանքով, որոնք վարկաբեկում են ռասայական պատկանելիության, մորթու գույնի, դավանանքի, կամ քաղաքական հայացքների հիման վրա։

գ) Գերմանական իշխանությունները դաշնակիցների ներկայացուցիչների պա-

հանջով պետք է կալանավորման վայրերի վերահսկողությունը հանձնեն այն սպաներին, որոնք այդ նպատակի համար կարող են նշանակվել դաշնակիցների ներկայացուցիչների կողմից։

## ՀՈԴՎԱԾ 7.

Գերմանական համապատասխան իշխանությունները պետք է դաշնակիցների ներկայացուցիչներին տրամադրեն.

ա) Լիակատար ինֆորմացիա 2-րդ հոդվածի «ա» կետում հիշատակված զինված ուժերի վերաբերյալ և, մասնավորապես, պետք է անհապաղ տրամադրեն բոլոր տեղեկությունները, որ դաշնակիցների ներկայացուցիչները կարող են պահանջել այդպիսի ուժերի թվական կազմի, տեղավորման և դասավորման վերաբերյալ, անկախ այն բանից, թե այդ ուժերը գտնվում են արդյոք Գերմանիայի ներսում, թե Գերմանիայից դուրս։

բ) Լիակատար ու մանրամասն ինֆորմացիա ականների, ականապատ դաշտերի և ցամաքում, ծովում ու օդում շարժման այլ խոչընդոտների, ինչպես նաև գոյություն ունեցող անվնաս անցուղիների մա-



սին։ Բոլոր այդպիսի՝ անվնաս ուղիները պետք է պահվեն բաց ու որոշակի նշված. բոլոր ականները, ականադաշտերը և մյուս վտանգավոր խոչընդոտները ըստ հնարավորության պետք է վնասազերծ արվեն և նավագնացության ամբողջ սարքավորումը պետք է վերականգնվի։ Գերմանական զինվորական և քաղաքացիական անզեն անձնակազմը, անհրաժեշտ սարքավորմամբ պետք է տրամադրվի և դաշնակիցների ներկայացուցիչների ցուցումով օգտագործվի վերոհիշյալ նպատակների համար, ինչպես նաև ականները որսալու, ականադաշտերը վնասազերծ անելու և մյուս խոչընդոտները վերացնելու համար։

## ՀՈԴՎԱԾ 8.

Ամենևին չպետք է ավերվի, տեղափոխվի, թաքցվի, ուրիշին հանձնվի, ջրասույզ արվի կամ վնասվի այս կամ այն ռազմական, ռազմա-ծովային, օդային, նավարկման, նավահանգստային, արդյունաբերական կամ նման այլ սարքավորումը և գույքը, ինչպես նաև բոլոր փաստաթղթերն

ու արխիվները, որտեղ էլ որ նրանք գտնըվելիս լինեն, բացառությամբ այն դեպքերի, երբ այդ մատնացույց կարվի դաշնակիցների ներկայացուցիչների կողմից։

## ՀՈԴՎԱԾ 9.

Մինչև կապի բոլոր միջոցների վրա դաշնակիցների ներկայացուցիչների վերահսկողության սահմանումը բոլոր հեռագրական, հեռախոսային և ռադիոսարքերն ու լարավոր և անլար կապի մյուս տեսակները, ինչպես ցամաքում, այնպես էլ ջրի վրա, որոնք գտնվում են գերմանական վերահսկողության տակ, պետք է դադարեցնեն հաղորդումը, բացառությամբ այն հաղորդումների, որոնք կատարվելու են դաշնակիցների ներկայացուցիչների կարգադրությամբ։

## ՀՈԴՎԱԾ 10.

Այս դեկլարացիայի կանոնները, ինչպես նաև դրա համապատասխան հրատարակվող բոլոր պրոկլամացիաները, հրամանները, կարգադրությունները և հրահանգները տարածվում են զինված ուժերի, նավերի,



ինքնաթիռների, ռազմական գույքի և այլ սեփականության վրա, որոնք գտնվում են Գերմանիայում կամ նրա վերահսկողության, նրա սպասարկության կամ նրա տնօրինության տակ և պատկանում են որևէ այլ երկրի, որը պատերազմի վիճակի մեջ է գտնվում դաշնակից տերություններից որևէ մեկի հետ։

## ՀՈԴՎԱԾ 11.

ա) Դաշնակիցների ներկայացուցիչների կողմից մատնացույց արված նացիստական գլխավոր պարագլուխները և բոլոր անձինք, որոնց անունները, աստիճանը, պաշտոնական դիրքը կամ պաշտոնը դաշնակիցների ներկայացուցիչների կողմից ժամանակ առ ժամանակ մատնացույց են արվելու այն կապակցությամբ, որ նրանք կասկածվում են պատերազմական ու համանման հանցագործություններ կատարելու, հրահրելու կամ անցկացնելու հրամաններ հրատարակելու մեջ, ձերբակալվելու են և հանձնվելու դաշնակիցների ներկայացուցիչներին։

բ) «ա» կետի կանոնները վերաբերում

են Միավորված Ազգերից որևէ մեկի ամեն մի քաղաքացու, որը մեղադրվում է իր ազգային օրենքի դեմ հանցագործություն կատարելու մեջ և որի անունը, աստիճանը, պաշտոնական դիրքը կամ պաշտոնը կարող են ամեն ժամանակ մատնացույց արվել դաշնակիցների ներկայացուցիչների կողմից։

գ) Գերմանական իշխանությունները և ժողովուրդը կատարելու են դաշնակիցների ներկայացուցիչների հրատարակելիք կարգադրությունը՝ այդպիսի անձանց ձերբակալելու և հանձնելու մասին։

ՀՈԴՎԱԾ 12.

Դաշնակիցների ներկայացուցիչները իրենց հայեցողությամբ տեղավորելու են զինված ուժերը և քաղաքացիական օրգանները Գերմանիայի ամեն մի կամ բոլոր մասերում։

ՀՈԴՎԱԾ 13.

ա) Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Միացյալ Թագավորության ու Ամերիկայի Միացյալ Նա-



հանգների կառավարությունների և Ֆրանսիական Ռեսպուբլիկայի Ժամանակավոր Կառավարության կողմից Գերմանիայի նրկատմամբ ստանձնված գերագույն իշխանությունը իրագործելու ժամանակ դաշնակից չորս կառավարությունները ձեռք են առնելու այնպիսի միջոցներ, ներառյալ Գերմանիայի լիակատար զինաթափումը և ապամիլիտարացումը, ինչպիսիք նրանք անհրաժեշտ կհամարեն ապագա խաղաղության և անվտանգության համար։

բ) Դաշնակիցների ներկայացուցիչները Գերմանիային կպարտադրեն քաղաքական, ադմինիստրատիվ, տնտեսական, ֆինանսական, ռազմական և այլ լրացուցիչ պահանջներ, որոնք բխում են Գերմանիայի լիակատար պարտությունից։ Դաշնակիցների ներկայացուցիչները կամ թե նրանց լիազորությամբ գործելու համար պատշաճ ձևով նշանակված անձերն ու օրգանները հրատարակելու են պրոկլամացիաներ, հրամաններ, կարգադրություններ և հրահանգներ այդ լրացուցիչ պահանջները սահմանելու և սույն դեկլարացիայի մյուս կա-

*նոնները կյանքում կենսագործելու նպատակով: Գերմանական բոլոր իշխանությունները և գերմանական ժողովուրդը պետք է անվերապահորեն կատարեն դաշնակիցների ներկայացուցիչների բոլոր պահանջները և ամբողջովին ենթարկվեն այդ բոլոր պրոկլամացիաներին, հրամաններին, կարգադրություններին և հրահանգներին։*

## ՀՈԴՎԱԾ 14.

*Այս դեկլարացիան ուժի մեջ է մտնում ստորև նշված օրը ու ժամին։ Այն դեպքում, երբ գերմանական իշխանությունները կամ ժողովուրդը արագ ու լիովին չկատարեն սույն դեկլարացիայով նրանց վրա դրված պարտավորությունները, դաշնակիցների ներկայացուցիչները ձեռք կառնեն ամեն տեսակ գործողություններ, որ նրանք նպատակահարմար կգտնեն այդպիսի պայմաններում։*

## ՀՈԴՎԱԾ 15.

*Սույն դեկլարացիան կազմված է ռուսերեն, անգլերեն, ֆրանսերեն և գերմաներեն։*



*Միայն ռուսերեն, անգլերեն և ֆրանսերեն տեքստերն են համազոր։*

*Ստորագրված է 1945 թվի հունիսի 5-ին Բեռլին քաղաքում։*

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԼԻԱԶՈՐՈՒԹՅԱՄԲ՝ ԳԵՐՄԱՆԻԱՅՈՒՄ ԳՏՆՎՈՂ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՕԿՈՒՊԱՑԻՈՆ ԶՈՐՔԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ՀՐԱՄԱՆԱՏԱՐ, ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԱՐՇԱԼ

**Գ. Կ. ԺՈՒԿՈՎ**

ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԼԻԱԶՈՐՈՒԹՅԱՄԲ ԲԱՆԱԿԻ ԳԵՆԵՐԱԼ

**Դ. ԷՅԶԵՆՀԱՈՒԵՐ**

ՄԻԱՑՅԱԼ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԼԻԱԶՈՐՈՒԹՅԱՄԲ ՖԵԼԴՄԱՐՇԱԼ

**Բ. Լ. ՄՈՆՀՈՄԵՐԻ**

ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԼԻԱԶՈՐՈՒԹՅԱՄԲ ԳԵՆԵՐԱԼ

**ԴԵԼԱՏՐ ԴԸ ՏԱՍՍԻՆՅԻ**

# ԳԵՐՄԱՆԻԱՅՈՒՄ ՎԵՐԱՀՍԿԻՉ ՄԵԽԱՆԻԶՄ ՍՏԵՂԾԵԼՈՒ ՄԱՍԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ, ՄԻԱՑՅԱԼ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ, ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԻՋԵՎ ԿԱՅԱՑԱԾ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ՇԱՐԱԴՐՈՒՄԸ

*1. Գերմանիայում գերագույն իշխանությունը, նրա կողմից անվերապահ կապիտուլյացիայի հիմնական պահանջները կատարվելու ժամանակաշրջանում, իրագործվելու է Սովետական, Բրիտանական, Ամերիկյան և Ֆրանսիական Գլխավոր Հրամանատարների կողմից, յուրաքանչյուրն իր գոտում, համաձայն նրանց համապատասխան կառավարությունների հրահանգների, ինչպես նաև համատեղ այն հարցերում, որոնք վերաբերում են Գերմանիային՝ ամբողջությամբ վերցրած: Չորս գլխավոր հրամանատարները միասին կկազմեն Վերահսկիչ Խորհուրդ: Գլխավոր հրամանատարներից յուրաքանչյուրին օգնելու է Քաղաքական խորհրդականը:*



*2. Վերահսկիչ խորհուրդը, որի որոշումները լինելու են միաձայն, կապահովի գլխավոր հրամանատարների գործողությունների պատշաճ համաձայնեցվածությունը նրանց համապատասխան գոտիներում, ինչպես նաև համաձայնեցված որոշումների կայացումը ամբողջ Գերմանիային վերաբերող գլխավոր հարցերում:*

*3. Վերահսկիչ խորհրդին կից ստեղծվելու է կոորդինացիայի մշտապես գործող կոմիտե, որի մեջ մտնելու են մեկական ներկայացուցիչ չորս գլխավոր հրամանատարներից յուրաքանչյուրի կողմից, ինչպես նաև վերահսկիչ անձնակազմ, բաշխված ըստ հետևյալ բաժինների (որոնք ենթակա են փոփոխման ձեռք բերվելիք փորձի հիման վրա).*

*Ռազմական. ռազմա-ծովային. ռազմա-օդային. տրանսպորտային. քաղաքական. տնտեսական. ֆինանսական. ռեպարացիների, դրույքների և ռեստիտուցիայի բաժին. ներքին գործերի ու կապի. իրավական. ռազմագերիների և տեղափոխված անձանց բաժին. բանվորական ուժի բաժին:*

*Յուրաքանչյուր բաժին ղեկավարելու են չորս ներկայացուցիչ, մեկական մարդ յու-*

յուրաքանչյուր տերությունից։ Բաժինների կազմի մեջ կարող են մտցվել ինչպես քաղաքացիական, այնպես էլ զինվորական անձինք, իսկ առանձին դեպքերում կարող են մտցվել նաև մյուս Միավորված Ազգերի քաղաքացիներ, որոնք նշանակվելու են որպես մասնավոր անձինք։

4. Կոորդինացիայի կոմիտեի և վերահսկիչ անձնակազմի ֆունկցիայի մեջ մտնելու են՝ ռեկոմենդացիաներ ներկայացնել Վերահսկիչ Խորհրդին, իրագործել Խորհրդի որոշումները և դրանք հաղորդել գերմանական համապատասխան օրգաններին, ինչպես նաև հսկել ու հետևել վերջիններիս ամենօրյա գործունեությանը։

5. Մյուս առավել շահագրգռված Միավորված Ազգերի կառավարությունների հետ կապը հաստատվելու է այդ կառավարությունների կողմից Վերահսկիչ Խորհրդին կից զինվորական միսիաներ նշանակելու միջոցով (որոնց մեջ կարող են լինել քաղաքացիական անդամներ)։ Այդ անձինք համապատասխան կանալների միջոցով մուտք կունենան դեպի Վերահսկիչ օրգանները։

6. Միավորված Ազգերի կազմակերպությունները, եթե Վերահսկիչ Խորհուրդը նրանց թույլ տա գործելու Գերմանիայում, ենթարկվելու են դաշնակիցների վերահսկիչ մեխանիզմին և պատասխանատու են նրա առաջ։

7. «Մեծ Բեռլինի» ռայոնի կառավարումը ղեկավարելու է միջդաշնակցային պարետություն, որը գործելու է Վերահսկիչ Հանձնաժողովի ընդհանուր ղեկավարությամբ և կազմված է լինելու չորս պարետներից, որոնցից յուրաքանչյուրը հերթով ծառայելու է որպես գլխավոր պարետ։ Նրանց օգնելու է տեխնիկական անձնակազմը, որը հետևելու և հսկելու է գերմանական տեղական օրգանների գործունեությանը։

8. Վերոհիշյալ միջոցառումները իրագործվելու են Գերմանիայի կապիտուլյացիային հաջորդած օկուպացիայի ժամանակաշրջանի ընթացքում, որի ժամանակ Գերմանիան կատարելու է անվերապահ կապիտուլյացիայի հիմնական պահանջները։ Հետևյալ ժամանակաշրջանի միջոցառումները հատուկ համաձայնության առարկա կլինեն։

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՕԿՈՒՊԱՑՄԱՆ ԳՈՏԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ, ՄԻԱՑՅԱԼ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ, ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԻՋԵՎ ԿԱՅԱՑՎԱԾ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ՇԱՐԱԴՐՈՒՄԸ

*1. 1937 թվի դեկտեմբերի 31-ի սահմաններում եղած Գերմանիան օկուպացման նպատակներով բաժանվելու է չորս գոտու, որոնցից ամեն մեկը հատկացվելու է չորս տերություններից մեկին, այսպես, արևելյան գոտին՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությանը, հյուսիսարևմտյան գոտին՝ Միացյալ Թագավորությանը, հարավ-արևմտյան գոտին՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներին և արևմտյան գոտին՝ Ֆրանսիական Ռեսպուբլիկային: Օկուպացիոն ուժերը յուրաքանչյուր գոտում ենթարկվելու են համապատասխան տերության նշանակած գլխավոր հրամանատարին: Չորս տերություններից յուրաքանչյուրը իր հայեցողությամբ օկուպացիոն պարտականությունները կատարելու համար նշանակված զինված ուժերի թվում*



*կարող է մտցնել, իր գլխավոր հրամանատարի հրամանատարությամբ, օժանդակ կոնտինգենտներ որևէ այլ դաշնակից տերության զինված ուժերի թվից, որն ակտիվորեն մասնակցել է Գերմանիայի դեմ մղված պատերազմական գործողություններին:*

*2. «Մեծ Բեռլին» ռայոնը գրավվելու է չորս տերություններից յուրաքանչյուրի զինված ուժերով: Այդ ռայոնը համատեղ կառավարելու համար ստեղծվում է միջդաշնակցային պարետություն՝ կազմված չորս պարետներից, որոնք նշանակվում են իրենց համապատասխան գլխավոր հրամանատարությունների կողմից:*

## ՄՅՈՒՍ ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ ԽՈՐՀՐԴԱԿՑԵԼՈՒ ՄԱՍԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ, ՄԻԱՑՅԱԼ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

*Գերմանիայի պարտության վերաբերյալ դեկլարացիայով, որը հրապարակվել է Բեռլինում 1945 թ. հունիսի 5-ին, Սովե-*

## ԳԵՐՄԱՆԻԱՅԻ ՕԿՈՒՊԱՑՄԱՆ ԳՈՏԻՆԵՐԻ ՄԱՍԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ, ՄԻԱՑՅԱԼ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ, ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՄԻՋԵՎ ԿԱՅԱՑՎԱԾ ՀԱՄԱՁԱՅՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ՇԱՐԱԴՐՈՒՄԸ

*1. 1937 թվի դեկտեմբերի 31-ի սահմաններում եղած Գերմանիան օկուպացման նպատակներով բաժանվելու է չորս գոտու, որոնցից ամեն մեկը հատկացվելու է չորս տերություններից մեկին, այսպես, արևելյան գոտին՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միությանը, հյուսիս-արևմտյան գոտին՝ Միացյալ Թագավորությանը, հարավ-արևմտյան գոտին՝ Ամերիկայի Միացյալ Նահանգներին և արևմտյան գոտին՝ Ֆրանսիական Ռեսպուբլիկային: Օկուպացիոն ուժերը յուրաքանչյուր գոտում ենթարկվելու են համապատասխան տերության նշանակած գլխավոր հրամանատարին: Չորս տերություններից յուրաքանչյուրը իր հայեցողությամբ օկուպացիոն պարտականությունները կատարելու համար նշանակված զինված ուժերի թվում*



*կարող է մտցնել, իր գլխավոր հրամանատարի հրամանատարությամբ, օժանդակ կոնտինգենտներ որևէ այլ դաշնակից տերության զինված ուժերի թվից, որն ակտիվորեն մասնակցել է Գերմանիայի դեմ մղված պատերազմական գործողություններին:*

*2. «Մեծ Բեռլին» ռայոնը գրավվելու է չորս տերություններից յուրաքանչյուրի զինված ուժերով: Այդ ռայոնը համատեղ կառավարելու համար ստեղծվում է միջդաշնակցային պարետություն՝ կազմված չորս պարետներից, որոնք նշանակվում են իրենց համապատասխան գլխավոր հրամանատարությունների կողմից:*

## ՄՅՈՒՍ ՄԻԱՎՈՐՎԱԾ ԱԶԳԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԵՏ ԽՈՐՀՐԴԱԿՑԵԼՈՒ ՄԱՍԻՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ, ՄԻԱՑՅԱԼ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՄԵՐԻԿԱՅԻ ՄԻԱՑՅԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԵՎ ՖՐԱՆՍԻԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ԺԱՄԱՆԱԿԱՎՈՐ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ՀԱՅՏԱՐԱՐՈՒԹՅՈՒՆԸ

*Գերմանիայի պարտության վերաբերյալ դեկլարացիայով, որը հրապարակվել է Բեռլինում 1945 թ. հունիսի 5-ին, Սովե-*

տական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության, Միացյալ Թագավորության ու Ամերիկայի Միացյալ Նահանգների կառավարությունները և Ֆրանսիական Ռեսպուբլիկայի ժամանակավոր Կառավարությունը Գերմանիայի նկատմամբ ստանձնել են գերագույն իշխանություն։ Չորս տերությունների կառավարությունները սրանով հայտարարում են, որ այդ իշխանության իրագործման կապակցությամբ նրանք մտադիր են խորհրդակցելու մյուս Միավորված Ազգերի կառավարությունների հետ։

---



## ՀԱՅԱՍՏԱՆԻ Կ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ XXI ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄԸ

**(1945 թ. հունիսի 1—ին)**

## ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՆԵՐԻ ՄՇԱԿՄԱՆ ԵՎ 1945 ԹՎԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ՄԱՍԻՆ

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի պլենումը զեկուցում լսելով և քննարկելով գյուղատնտեսական կուլտուրաների մշակման և 1945 թվի բերքահավաքի նախապատրաստման մասին, նշում է, որ չնայած գարնան ուշ բացվելուն, ռեսպուբլիկայի կոլխոզները հաջողությամբ ավարտեցին հացահատիկի, բամբակի, շաքարի ճակնդեղի և կարտոֆիլի ցանքը։

Գարնան դաշտային աշխատանքները օրինակելիորեն կազմակերպեցին և գյուղատնտեսական կուլտուրաների ցանքն ագրոտեխնիկական սահմանված ժամկետներում ավարտեցին Աշտարակի, Ղամարլուի,

Հոկտեմբերյանի, Ստեփանավանի, Գորիսի, Ղարաբաղլարի, Թալինի, Նոր Բայազետի, Դուզքենդի, Աղինի և Սիսիանի շրջանների կոլխոզները։

Պլենումը նշում է ռեսպուբլիկայի մեքենատրակտորային կայանների հաջող աշխատանքը։ 1945 թվի հունիսի 1-ին գարնանային տրակտորային աշխատանքների պլանը կատարված էր՝ գարնանավարը՝ 110 տոկոսով, փոցխումը՝ 155 տոկոսով, փըխրեցումը՝ 149 տոկոսով։

Անցյալ տարվա համեմատությամբ 23.000 հեկտարով ավելի տրակտորային աշխատանք է կատարվել։

Ռեսպուբլիկայի կոլխոզները 1945 թվի բերքի համար դաշտ են փոխադրել 1.608 հազար տոննա գոմաղբ և մոխրային պարարտանյութ, պլանով նախատեսված 1.500 հազար տոննայի փոխարեն, և մոտ 12.000 տոննա հանքային պարարտանյութ, 1944 թվի 3.500 տոննայի փոխարեն։

Դրա հետ միասին Կենտկոմի պլենումը նշում է ծխախոտի և բանջարանոցային կուլտուրաների, ինչպես նաև գանգրավուշի և խոտաբույսերի ցանքի անբավարար ընթացքը։



Կենտկոմի պլենումը նշում է նույնպես գյուղատնտեսական կուլտուրաների մշակման աշխատանքների անբավարար ընթացքը կոլխոզներում։ Դանդաղ է ընթանում հացահատիկային կուլտուրաների քաղհանը և փոցխումը։ Բամբակացան և ճակնդեղացան շատ կոլխոզներ մինչև այժմ դեռ ձեռնամուխ չեն եղել առաջին մշակմանը՝ կուլտիվացիային և քաղհանին։

Շրջանային պարտիական կազմակերպությունները, սովետական և հողային օրգանները՝ ՄՏ կայանները և կոլխոզները բերքահավաքի համար նախապատրաստական աշխատանքը դանդաղ են կատարում։ Կոմբայնների նորոգումը մինչև հունիսի մեկը կատարված է 77,3 տոկոսով, կալսիչներինը՝ 58,5 տոկոսով։ Շրջանների մեծ մասը ձեռնամուխ չի եղել կոլխոզների բերքահավաքի ինվենտարի և մեքենաների նորոգմանը։ Կոմբայնների և կալսիչների նորոգման գործում առանձնապես ետ են մնում Սևանի, Ղարիբջանյանի, Դուզքենդի, Նոր Բայազետի, Իջևանի, Ղուկասյանի և այլ ՄՏ կայաններ։

Կենտկոմի պլենումը որոշում է.

1. պարտիական, կոմերիտական կազմա-

կերպությունների, սովետական և հողային օրգանների կարևորագույն խնդիրը համարել՝ ժամանակին և բարձրորակ կատարել ցանքերի մշակումը, բուժումը և խնամքը, աճեցնել գյուղատնտեսական բոլոր կուլտուրաների բարձր բերք, օրինակելիորեն նախապատրաստել ու կատարել բերքահավաքը և ապահովել հացահատիկի ու մյուս մթերքների պետական հանձնումների ժամկետից շուտ կատարումը:

2. Պարտավորեցնել պարտիայի շրջկոմներին, շրջսովետների գործկոմներին, շրջհողբաժիններին և ՄՏ կայանների դիրեկտորներին՝ միջոցներ ձեռք առնել գանգրավուշի և կերաբույսերի ցանքը հինգ օրում, իսկ ծխախոտի ու բանջարբոստանի կուլտուրաների ցանքը հունիսի 15-ին ավարտելու համար:

3. Կենտկոմի պլենումը բոլոր պարտիական, սովետական կազմակերպություններից, հողային օրգաններից և կոլխոզների վարչություններից պահանջում է հաշվի առնել գյուղատնտեսական կուլտուրաների աճման ու զարգացման հետ մնալը ընթացիկ տարվա կլիմայական առանձնահատկությունների կապակցությամբ, որը պա-



հանջում է ժամանակին և ավելի բարձրո-
րակ անցկացնել ագրոտեխնիկական բոլոր
միջոցառումները և անհապաղ աշխատանք
ծավալել գյուղատնտեսական կուլտուրանե-
րի մշակման ուղղությամբ, դրա համար՝

ա) մոտակա օրերում ավարտել հացահատիկային կուլտուրաների փոցխումը այն հողամասերում, որտեղ բույսերը թույլ են զարգացել, փոցխումից առաջ սնուցում կատարել տեղական և հանքային պարարտանյութերով: Ուժեղացնել հացահատիկային կուլտուրաների քաղհանը և այդ աշխատանքը ամենուրեք ավարտել մինչև հացաբույսերի ցողուն տալը.

բ) ուժեղացնել բամբակի դաշտերի մշակման աշխատանքները, նոսրացումը, առնվազն հինգ անգամ կուլտիվացիա և 6—7 անգամ ձեռքի փխրեցում կատարելը: Միաժամանակ ավարտել առաջին վեգետացիոն ջուրը, ինչպես նաև ապահովել կրկնակի սնուցումը առաջին հերթին այն հողամասերում, որտեղ հետ է մնում բույսերի աճը.

գ) Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, բամբակացան շրջանների պարտիայի շրջկոմներին, շրջսովետների գործկոմներին՝

մինչև հունիսի 15-ը ապահովել պոլիտուֆիդ-կալցիումի անհրաժեշտ քանակությունը՝ բամբակենու բուժում կատարելու համար։

դ) շաքարի ճակնդեղի պլանտացիաներում տաս օրում ավարտել ցանքերի ստուգումն ու փխրեցումը, ժամանակին ավարտելով բուկլիցը։ Ամենուրեք ձեռնամուխ լինել շարամեջ մշակմանը և քաղհանին, լայնորեն գործադրելով տրակտորային կուլտիվատորները։ Վեգետացիայի ժամանակամիջոցում կազմակերպել կրկնակի սնուցում տեղական և հանքային պարարտանյութերով.

ե) պարտավորեցնել Հողժողկոմատին և ՄՏՍ կայանների դիրեկտորներին՝ տաս օրում լիովին պատրաստել մշակող տրակտորները և կուլտիվատորները ու կարգավորել նրանց անխափան աշխատանքը.

զ) ծխախոտի սածիլումն ավարտելու հետ միասին, կազմակերպել ծխախոտի պլանտացիաների ստուգումը և նորոգումը, ապահովելով ծխախոտի տունկերի սահմանված խտությունը։ Վեգետացիայի ամբողջ ժամանակաշրջանում ապահովել առնվազն 4—5 մշակում և կրկնակի սնուցում.

է) առանձնահատուկ ուշադրություն դարձ-



նել տեխնիկական կուլտուրաների հեկտարների լիարժեքությանը, որի համար ուշադիր ստուգման, ճիշտ նոսրացման, ենթացանքի և սածիլի միջոցով ապահովել ագրոկանոններով սահմանված բույսերի քանակը ըստ հեկտարի, որից հետո ակտով ձևակերպել ցանքերի վիճակը.

ը) վուշի ցանքերի ամբողջ տարածության վրա ապահովել կրկնակի քաղհան, իսկ առանձին հողամասերում սնուցում կատարել պարարտանյութերով.

թ) կարտոֆիլի և բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքերի հողամասերում վեգետացիայի սկզբից սիստեմատիկաբար կիրառել ագրոտեխնիկական միջոցառումների ամբողջ կոմպլեկսը (փխրեցում, քաղհան, սնուցում, ջուր և այլն).

ժ) հնգօրյա ժամկետում ավարտել հացահատիկային բույսերի, կարտոֆիլի, կերաբույսերի և բանջարեղենների սերմնադաշտերի առանձնացումը, դրանք ամրացնել առանձին օղակների, ապահովելով առաջնահերթ և խնամքով մշակումը։

4. Պարտավորեցնել օժանդակ տնտեսություններ ունեցող ժողկոմատների ղեկավարներին, ձեռնարկությունների ու հիմ-

նարկությունների դիրեկտորներին, պարտիայի քաղկոմներին ու շրջկոմներին՝ ապահովել կարտոֆիլի, բանջարանոցային և այլ կուլտուրաների ժամանակին ու խնամքով քաղհանը և շարամեջ մշակումը օժանդակ տնտեսություններում, բանվորական ուժով անհրաժեշտ օգնություն ցույց տալով նրանց։

5. Կենտկոմի պլենումը անբավարար համարելով խաղողի և պտղատու այգիների մշակման ընթացքը կոլխոզներում հատկապես սովխոզներում, բոլոր պարտիական ու սովետական կազմակերպություններից, հողային օրգաններից, կոլխոզների վարչություններից և սովխոզների դիրեկտորներից **պահանջում է բարելավել** բազմամյա տունկերի մշակումը, որի համար ավարտել խաղողի բոլոր այգիների համատարած փորումը, պտղատու ծառերի բների շուրջը փորելը, ինչպես նաև դրանց ժամանակին ու բարձրորակ բուժումը։

6. Հաշվի առնելով ցելը ժամանակին կատարելու և ուշադիր մշակելու բացառիկ նշանակությունը որպես դաշտերը մոլախոտերից մաքրելու և աշնանացան հացաբույսերի բարձր բերք ստանալու հիմնական



պայման, Կենտկոմի պլենումը պարտավորեցնում է պարտիայի շրջկոմներին, շրջսովետների գործկոմներին և ՄՏ կայանների դիրեկտորներին՝ անհրաժեշտ միջոցներ ձեռք առնել ցելերի տեմպն ուժեղացնելու, կոլխոզների, ՄՏ կայանների ու սովխոզների գարնանային դաշտային աշխատանքներից ազատ և տեխնիկական կուլտուրաների շարամեջ մշակմամբ չզբաղված բոլոր տրակտորները և կենդանի քաշող ուժը անհապաղ ցելերի վարին փոխադրելու համար, վարից առաջ դաշտ փոխադրելով գոմաղբամոխրային և հանքային պարարտանյութեր։

7. Կենտկոմի պլենումը բոլոր պարտիական, սովետական և հողային օրգանների և ջրային տնտեսության աշխատողների ուշադրությունը հրավիրում է 1945 թվի ջրի սեզոնը ճիշտ կազմակերպելու, ոռոգման ցանցը ռացիոնալ կերպով և գիշեր-ցերեկ օգտագործելու անհրաժեշտության վրա։

Կենտկոմի պլենումը պահանջում է խստիվ պահպանել գյուղատնտեսական կուլտուրաները ջրելու ժամկետները, նորմաները և լավագույն եղանակները, լիովին վե-

բացնելով ցանքը հեղեղելու և ողողելու պրակտիկան, որը դեռևս կիրառվում է առանձին տեղերում:

8. Հաշվի առնելով վնասատուների և գյուղատնտեսական կուլտուրաների հիվանդությունների դեմ մղվող պայքարը ժամանակին և բարձր որակով կազմակերպելու մեծ նշանակությունը բերքի պահպանման գործում, Կենտկոմի պլենումը բոլոր պարտիական, սովետական կազմակերպություններից, հողային օրգաններից և կոլխոզների վարչություններից պահանջում է դաշտերում, պտղատու և խաղողի այգիներում լրիվ կենսագործել պայքարի միջոցները բամբակի սարդ (տիզ) վնասատուների, լվիճի, միլդիումի, օիդիումի և մյուս հիվանդությունների ու վնասատուների դեմ, առանձնահատուկ ուշադրություն դարձնելով խնամքով և հիմնավոր պայքարին ընդդեմ մկանման կրծողների և վնասակար բզեզների (շալա):

Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին՝ տասնօրյա ժամկետում շրջանները փոխադրել անհրաժեշտ քանակությամբ քիմիական թունավոր նյութեր:

9. Կենտկոմի պլենումը պարտավորեցնում է Հայկական ՍՍՌ Հողժողկոմատին, պարտիայի շրջկոմներին, շրջսովետների գործկոմներին, Ալինի, Արթիկի, Մարտունու, Ստեփանավանի, Վեդու, Ղարիբջանյանի, Դուզքենդի, Կալինինոյի ՄՏ կայանների դիրեկտորներին.



ա) անհապաղ միջոցներ ձեռք առնել կոմբայնների, կալսիչների և ՄՏ կայանների մյուս բերքահավաքող մեքենաների նորոգումը ուժեղացնելու և դրանք ոչ ուշ քան հունիսի 10-ը լրիվ նախապատրաստելու համար.

բ) հանձնարարել շրջանային պետական հանձնաժողովներին՝ նորոգված բերքահավաքի մեքենաները ենթարկել պարտադիր ստուգման և փորձարկման, ու կազմակերպել դրանց ակտով հանձնումը բրիգադիրներին, կոմբայնավարներին ու կալսիչավարներին.

գ) բոլոր կոմբայնները սարքավորել հատիկաորսիչներով, պառկած հացաբույսերը հնձելու հարմարանքներով, ինչպես նաև աշխատանքի ժամանակ հացահատիկը բեռնաթափելու հարմարանքներով:

10. Պարտավորեցնել Հողժողկոմատին, Գլավնեվթսնաբի վարչությանը և մեքենա-

տրակտորային կայանների դիրեկտորներին՝ ժամանակին նավթի բազաները փոխադրել անհրաժեշտ քանակությամբ վառելանյութ և յուղանյութ, որոնք ապահովեն կոմբայնների ու կալսիչների անխափան աշխատանքը, թույլ չտալով բերքահավաքի աշխատանքների համար առանձնացված վառելանյութը օգտագործել որևէ այլ աշխատանքի համար։

11. Պարտավորեցնել պարտիայի շրջկոմներին, շրջսովետների գործկոմներին, շրջհողբաժիններին և կոլխոզների վարչություններին՝ անհապաղ ծավալել կոլխոզների բերքահավաքի ինվենտարի և մեքենաների նորոգումը այն հաշվով, որ դրանք լիովին պատրաստ լինեն մինչև ս. թ. հունիսի 15-ը։ Նորոգված ամբողջ ինվենտարը ընդունել տեղական հանձնաժողովների կողմից՝ շրջհողբաժնի ներկայացուցչի մասնակցությամբ։

Հանձնարարել ՄՏ կայանների դիրեկտորներին՝ օգնություն ցույց տալ կոլխոզներին՝ կոլխոզների տրակտորները, կալսիչները, խոտհնձի մեքենաները և մյուս մեքենաներն ու ինվենտարը նորոգելու գործում։

12. Կենտկոմի պլենումը պարտավորեցնում է շրջանային պարտիական, սովետական և հողային օրգաններին, ՄՏ կայանների ու սովխոզների դիրեկտորներին և կոլխոզների վարչություններին՝



ա) բերքահավաքն սկսել առանձին հողամասերում բույսերի հասունացման զուգընթաց, թույլ չտալով, որ հասունացած հացաբույսերը կծղեն և հացահատիկը թափվի.

բ) ոչ ուշ քան բերքահավաքը սկսելուց 10 օր առաջ բոլոր կոմբայնները և բերքահավաքի մեքենաները փոխադրել կոլխոզներն ու դաշտերը, հացաբույսերի բերքահավաքի ժամանակ ապահովել կոմբայնների անխափան աշխատանքը օրական առնվազն 16 ժամ, իսկ կալսիչներինը՝ 20 ժամ.

գ) մինչև բերքահավաքն սկսելը նորոգել բոլոր ներկոլխոզային, միջգյուղային ճանապարհներն ու կամուրջները՝ տրանսպորտի նորմալ աշխատանքը և կոմբայնների ու կալսիչների ժամանակին փոխադրումները ապահովելու համար.

դ) բերքահավաքի հետ միասին ձեռնամուխ լինել կալսմանը, ինչպես կալսիչներով, այնպես էլ կենդանի քաշող ուժով,

խզում թույլ չտալով հնձի և կալսման միջև։ Ժամանակին կարգի բերել կալատեղերը, նորոգել և ախտահանել կոլխոզների պահեստները՝ նոր բերքի հացահատիկն ընդունելու համար.

ե) առանձնահատուկ ուշադրություն դարձնել, որ ամենուրեք (դաշտերում, կալատեղերում, պահեստներում) ապահովվեն անհրաժեշտ հակահրդեհային միջոցառումներ և պահպանություն, որի համար նորոգել հրշեջ ամբողջ ինվենտարը, ջուր բերել և որպես հրշեջներ ու պահապաններ աշխատանքի դնել ստուգված և այդ գործում բավականաչափ փորձ ունեցող մարդկանց, դրանց թեկնածությունը պարտադիր կարգով հաստատելով կոլխոզների վարչությունների նիստերում.

զ) բերքահավաքից անմիջապես հետո բոլոր հողամասերում կազմակերպել հասկահավաք, այդ աշխատանքում լայնորեն ներգրավելով կոմերիտականներին, դպրոցականներին և դեռահասներին։

Հանձնարարել ՀԼԿԵՄ Կենտկոմին և կոմերիտմիության շրջկոմներին՝ մշտական ղեկավարություն ապահովել կոլխոզների կոմերիտական կազմակերպությունների ն-



կատմամբ՝ հասկահավաքը հաջող կազմակերպելու գործում, ռեսպուբլիկական և շրջանային մամուլում լայնորեն մասսայականացնելով առաջավոր կազմակերպությունների նվաճումները այդ գործում։

13. Պարտավորեցնել ՀԼԿԵՄ Կենտկոմին, Հողժողկոմատին, կոմերիտմիության շրջկոմներին և հողային օրգաններին՝ ուժեղացնել օգնությունը բարձր բերքի կոմերիտական-երիտասարդական օղակներին և երիտասարդական տրակտորային բրիգադներին, ապահովելով հողի օրինակելի մշակումը և բարձր բերքի ստացումը։

14. Կենտկոմի պլենումը Հողժողկոմատի, պարտիայի շրջկոմների և շրջսովետների գործկոմների ուշադրությունը հրավիրում է այն բանի վրա, որ անհրաժեշտ է որպես սերմնադաշտ առանձնացված բազմամյա կերաբույսերի բոլոր տարածությունները արածացումից խնամքով պահպանել և լիովին հավաքել կորնգանի ու առվույտի սերմերը սահմանված ցանքաշրջանառության համապատասխան 1946 թվի ցանքերը ապահովելու համար։

15. Պարտավորեցնել Տեղարդժողկոմա-

տին, Հայարդկոոպխորհրդին, Անտառժողկոմատին և արդյունաբերական ձեռնարկությունների դիրեկտորներին՝ գործնական միջոցներ ձեռք առնել հունիս ամսվա ընթացքում ապահովելու տրակտորների, կոմբայնների ու կալսիչների պահեստի մասերի, գյուղատնտեսական մանր ինվենտարի, ապարատուրայի, սայլերի, քամհարների և բերքահավաք այլ ինվենտարի արտադրությունը՝ 1945 թվի առաջին կիսամյակի համար Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի հաստատած չափով:

16. Պարտավորեցնել Առևտրի ժողկոմատին և Հայկոոպին՝ մշակման և բերքահավաքի աշխատանքների ժամանակաշրջանում կազմակերպել մանր գյուղատնտեսական ինվենտարի ժամանակին փոխադրումը բոլոր շրջանները և դրանց իրացումը կոլխոզներում, ինչպես նաև արդյունաբերական ապրանքների փոխադրումը կոլխոզների, մանկապարտեզների և մանկամսուրների համար:

17. Պարտավորեցնել պարտիայի շրջկոմներին, շրջսովետների գործկոմներին և շրջհողբաժիններին՝ բոլոր կոլխոզներում խստիվ պահպանել սահմանված այն կար-



գը, որի համաձայն դաշտավարական բրիգադների բրիգադիրները ամեն օր ընդունում են բերքը հավաքած դաշտերը, ինչպես նաև դրանց ընդունումը բրիգադիրներից կոլխոզների նախագահների կողմից ոչ ուշ քան առանձին մասիվների բերքահավաքն ավարտելուց երեք օր հետո, ակտեր կազմելով բերքահավաքի որակի մասին, ապահովելով կոլխոզնիկների աշխօրերի և յուրաքանչյուր հողամասից ստացված բերքի ճիշտ հաշվառումը:

18. Կենտկոմի պլենումը պարտավորեցնում է շրջանային պարտիական և սովետական կազմակերպություններին՝

ա) բերքահավաքի ժամանակաշրջանում դաշտային աշխատանքի հանել գյուղական վայրերի աշխատունակ ամբողջ բնակչությունը, առավելագույն չափով ներգրավելով այդ աշխատանքներին նաև ծերունիներին ու դեռահասներին.

բ) բոլոր կոլխոզներում ապահովել աշխատանքը վաղ առավոտից մինչև երեկո՝ փոքր ընդմիջումներով նախաճաշի և ճաշի համար: Կոլխոզներից հեռու ընկած հողամասերում կազմակերպել գիշերելու և

սնվելու դաշտային կայաններ կոլխոզնիկների համար։

19. Պարտավորեցնել Հայկական ՍՍՌ Առողջապահության ժողկոմատին, Լուսժողկոմատին և Հողժողկոմատին՝ բոլոր շրջանները տեսուչներ ուղարկել կոլխոզների վարչություններին օգնություն ցույց տալու դաշտային մանկամսուրներ և մանկական հրապարակներ կազմակերպելու գործում, նպատակ ունենալով բերքահավաքի աշխատանքին ներգրավել մանկահասակ երեխաներ ունեցող բոլոր կանանց։

Հանձնարարել մանկամսուրներ, մանկապարտեզներ և մանկական հրապարակներ կազմակերպելու հնարավորություն չունեցող կոլխոզներին՝ ապահովել երեխաների խնամքը տանը, դրա համար միավորելով նրանց խմբերի, և երեխաների խնամքը հանձնել փորձված տարիքավոր կոլխոզնիկուհիների, վարձատրելով նրանց աշխատանքը ի հաշիվ կոլխոզի։

20. Հաշվի առնելով ձմեռը անասուններին անհրաժեշտ կերով լրիվ ապահովելու բացառիկ կարևորությունը, Կենտկոմի պլենումը պարտիայի շրջկոմներից, շրջսովետների գործկոմներից, շրջհողբաժիններից,



ՄՏ կայանների և սովխոզների դիրեկտորներից պահանջում է ձեռք առնել բոլոր միջոցները՝ օրինակելիորեն նախապատրաստելու և անցկացնելու խոտհունձն ու կերի սիլոսացումը, ավարտելով այդ աշխատանքը կոլխոզներում և սովխոզներում հացահատիկային կուլտուրաների մասսայական բերքահավաքը սկսվելուց առաջ։

21. Կենտկոմի պլենումը շրջանների պարտիական և սովետական կազմակերպությունների առջև դնում է պետական կարևորագույն խնդիր՝ առաջին իսկ կալից լրիվ ու ժամկետից առաջ կատարել պետությանը հացահատիկ հանձնելու պարտավորությունները, հացահատիկի հանձնումը Կարմիր Բանակի ֆոնդին և բնավարձի վճարումը ՄՏԿ-ի աշխատանքի համար, ինչպես նաև պետությանը գյուղատնտեսական այլ մթերքներ հանձնելու պարտավորությունները։

Պարտավորեցնել պարտիայի շրջկոմներին և շրջսովետների գործկոմներին՝ օգնություն ցույց տալ ՍՍՌՄ Պետպլանի Լիազորին և Մթերումների ժողկոմատի Լիազորին՝ հացահատիկային կուլտուրաների բերքը ժամանակին ու ճիշտ որոշելու, ինչպես

նաև բերքատվության կարգը սահմանելու գործում, կասեցնելով բերքատվությունը արհեստականորեն պակասեցնելու ամեն տեսակ փորձերը։

22. Պարտավորեցնել «Զագոտզեռնոյի» հայկական գրասենյակին՝ ապահովել բոլոր մթերակայանների և պահեստների ժամանակին պատրաստումը նոր բերքի հացահատիկն ընդունելու համար։

Մինչև ս. թ. հուլիսի 1-ը բոլոր մթերակայաններում ավարտել կշեռքների, պարկերի և այլ ինվենտարի նորոգումը, ինչպես նաև հացահատիկային ամբարների գազացումն ու ախտահանումը։

23. Պարտավորեցնել ՍՍՌ Մթերումների ժողկոմատի Հայկական ՍՍՌ Լիազորին, պարտիայի շրջկոմներին, շրջսովետների գործկոմներին և Մթերումների ժողկոմատի շրջանային լիազորներին՝ խիստ վերահսկողություն հաստատել բամբակի հումքի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի ամբողջ բերքը պետությանը լրիվ հանձնելու նկատմամբ, թույլ չտալով հափշտակում և վատնում, ինչպես նաև չթողնել, որ բերքի մի մասը մնա կոլխոզներում և կոլխոզնիկների մոտ։



24. Պարտավորեցնել Տեքստիլ ժողկոմատին, Սննդարդժողկոմատին, Հայբամբակտրեստին, «Տաբակսիրյո» տրեստին և Համամլուի շաքարի գործարանի դիրեկտորին՝ ոչ ուշ, քան 15 օր առաջ նախապատրաստել մթերակայաններն ու բազաները բամբակի, ծխախոտի և շաքարի ճակնդեղի բերքի ընդունմանը, ժամանակին ապահովելով կայաններն ու բազաները անհրաժեշտ տարայով, փոխադրական միջոցներով, ինչպես նաև ստուգված ընդունողներով։

25. Պարտավորեցնել Սննդարդժողկոմատին, Առևտրի ժողկոմատին, Հայկոոպին, Հայկոնսերվտրեստին, «Արարատ» տրեստին՝ նախքան պտուղների, խաղողի, բանջարեղենի ու կարտոֆիլի մթերումն սկսելը նախապատրաստել ընդունող և վերամշակող կետերը շրջաններում, ապահովել դրանց կահավորումը անհրաժեշտ ինվենտարով, տարայով և պտուղների, խաղողի ու բանջարեղենի փոխադրումը դեպի վերամշակման կետերը։

26. Կենտկոմի պլենումը հանձնարարում է «Սովետական Հայաստան», «Կոմունիստ» և «Սովետ Էրմենիստանը» թերթերի խմբա-

գրություններին՝ մամուլում լայնորեն լու-
սաբանելու ցանքերի քաղհանի և շարամեջ
մշակման ընթացքը կոլխոզներում, սով-
խոզներում ու օժանդակ տնտեսություննե-
րում և առաջավոր կոլխոզների ու սով-
խոզների փորձը գյուղատնտեսական կուլ-
տուրաները խնամելու ասպարեզում։

27. Կենտկոմի պլենումը բոլոր պար-
տիական, կոմերիտական և սովետական
կազմակերպությունների ուշադրությունն է
բևեռում այն հանգամանքի վրա, որ ան-
հրաժեշտ է պատշաճ պայքար կազմակեր-
պել գյուղատնտեսական մթերքների կորըս-
տի, վատնման ու հափշտակման դեմ դաշ-
տերում, փոխադրելիս, կալերում և մթերա-
կայաններում, որի համար պլենումը պա-
հանջում է սահմանել գիշեր-ցերեկ հեր-
թապահություն ու պահակություն, այդ աշ-
խատանքի համար առանձնացնել ստուգված
մարդիկ, ինչպես նաև բերքի պահպանմա-
նը հետևելու համար ներգրավել կոմերի-
տականներին ու պիոներներին։

28. Կենտկոմի պլենումը պարտավորեց-
նում է պարտիայի և կոմերիտմիության
շրջկոմներին՝ մշակման և բերքահավաքի
աշխատանքների ժամանակաշրջանում ու-



ժեղացնել ագիտացիոն-մասսայական աշ-
խատանքը կոլխոզներում, բրիգադաներում
ու օղակներում, լայնորեն ծավալել սոցիա-
լիստական մրցությունը կոլխոզների, բրի-
գադաների, օղակների և առանձին կոլխոզ-
նիկների միջև, ՄՏԿ-ների և սովխոզների
աշխատողների միջև՝ գյուղատնտեսական
կուլտուրաների մշակումը ժամանակին ու
բարձրորակ կատարելու, բերքահավաքը
նախապատրաստելու և այն առանց կորըս-
տի անցկացնելու համար, ինչպես նաև պե-
տական հանձնումները և գյուղատնտեսա-
կան մթերքների մթերումները ժամկետից
շուտ կատարելու համար։

---

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Պատասխանատու խմբագիր՝
Ս. ԱՐԵՇՅԱՆ



ՎՖ 01285 պատվեր № 837, տիրաժ 5000

Հայկական ՍՍՌ ԺԿՍ-ին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան

**ՎՐԻՊԱԿ**

Բլոկնոտի 10-րդ համարում 53-րդ էջում ներքևից 9-րդ տողում տըպված է 1943 թ.: Պետք է կարդալ 1913 թ.: